Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 11 (89)

ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ, ՅԵՐԵՎԱՆ 1940 Թ.

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՑԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 11 (89)

ՍՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ, ՅԵՐԵՎԱՆ 1940 Թ.

# Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն



# ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ԱՌԵՎՏՈՒՐԸ ՄԵՐ ՀԱՐԱԶԱՏ, ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ԳՈՐԾՆ Ե

## ԱՊՐԱՆՔԱՇՐՋԱՆԱՌՈՒԹՅԱՆ ՅԵՎ ՍՊԱՌՄԱՆ ԱՃՈՒՄԸ ՔԱՂԱՔՈՒՄ ՅԵՎ ԳՅՈՒՂՈՒՄ

*Մեր յերկրում անշեղորեն աճում ու զարգանում ե խորհրդային առևտուրը, առևտուր՝ առանց մեծ և փոքր կապիտալիստների, առանց մեծ և փոքր սպեկուլյանտների: Ամբողջ ապրանքաշրջանառությունը գտնվում ե պետության, կոոպերացիայի և կոլխոզների ձեռքում: «Դա հատուկ տեսակի առևտուր ե, վորպիսին չի ճանաչել մինչև այժմ պատմությունը և վորը գործադրում ենք միայն մենք, բոլշևիկներս, խորհրդային զարգացման պայմաններում»*):*

---

*) Ի. Վ. Ստալին.— «Լենինիզմի հարցերը», եջ 390, 11-րդ հրատ:

Ծավալուն ապրանքաշրջանառությունը պարտադիր պայմանն է այն բանի, վոր յերկրի տնտեսական կյանքը բղխի աղբյուրի պես: Այն բանից, թե ինչպես են աշխատում բազաները, պահեստները, խանութները, կրպակները, ճաշարանները, վորոնցից կախված է միլիոնավոր աշխատավորների ամենորյա կարիքների սպասարկումը: Ահա թե ինչո՛ւ կոմունիստական կուսակցությունը, խորհրդային կառավարությունը բացառիկ ուշադրություն են նվիրում խորհրդային առևտրին, այն ամեն կերպ զարգացնելուն և ճիշտ կազմակերպելուն:

Ապրանքաշրջանառության զարգացումը ԽՍՀՄ-ում հենվում է սոցիալիստական արդյունաբերության և գյուղատնտեսության արտադրանքի անշեղ աճման վրա, ժողովրդական բարեկեցության անընդհատ վերելքի վրա: Տարեց-տարի, ամսե-ամիս առևտրական ձեռնարկությունները ազգաբնակչությանը վաճառում են ավելի ու ավելի մեծ քանակությամբ լայն սպառման բազմազան ապրանքներ և մթերքներ:

Ահա թե ինչպես են աճել պետական և



կոոպերատիվ առևտրի շրջանառությունները (ներառյալ հասարակական սնունդը) ստալինյան հնգամյակների տարիներին.

| Տարիները | Շրջանառությունը (միլիարդ ռուբլիներով) |
|---|---|
| 1929 | 15,2 |
| 1932 | 40,3 |
| 1937 | 125,9 |
| 1938 | 140,0 |
| 1939 | 164,0 |

Զգալիորեն ընդարձակվել են նաև կոլխոզ-շուկաների առևտրի շրջանառությունները. 1933 թվից մինչև 1938 թիվը նրանք ավելացել են ավելի քան 2 անգամ:

Յերրորդ հնգամյակի պլանը նախատեսում է պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառության աճում մինչև 206 միլիարդ ռուբլի 1942 թվին, այսինքն՝ 1937 թվի համեմատությամբ 63,5%-ով: Շրջանառության առանձնապես մեծ աճում է նշված կահույքեղենի, բրդե գործվածքների, տրիկոտաժի գծով, պարենային ապրանքներից՝ կոնսերվի, ձվեղենի, թռչնեղենի, մսի և կոլբասեղենի, կրուպայի, պանրի կենդանական յուղի, մակարոնի գծով:

Սիստեմատիկորեն աճում են արդյունաբերական ապրանքների և սննդամթերքների շուկայական ֆոնդերը: Անցյալ տարի, 1933 թվի համեմատությամբ, կենդանական յուղի սպառումն ավելացավ 3,3 անգամ (նատուրալ արտահայտությամբ), շաքարինը՝ 3,6, լվացքի օճառինը՝ 3,7, կաշվե վոտնամաններինը՝ 2,8, տրիկոտաժինը՝ 3,4, բամբակեղեն գործվածքներինը՝ 2 անգամ և այլն:

Սպառման չեշտակի աճման մասին են խոսում Մոսկվայի վերաբերյալ հետևյալ տվյալները: 1939 թվին մայրաքաղաքի ազգաբնակչությունը, 1938 թվի համեմատությամբ, ավելացել է 5,2%-ով: Իսկ ապրանքաշրջանառությունը բարձրացավ 17,5%-ով: Ըստ վորում առավել ուժգին ավելացավ մսի վաճառքը՝ 58%-ով (նատուրալ արտահայտությամբ), կալբասեղենինը՝ 24, կենդանական յուղինը՝ 30, շաքարինը՝ 43, հրուշակեղենինը՝ 31, թեյինը՝ 49 տոկոսով և այլն:

Առանձնապես պետք է նշել ապրանքաշրջանառության արագ աճումը գյուղում: Այդ համապատասխանում է այն գծին, վոր տանում է խորհրդային իշխանությունը քաղաքային և գյուղական բնակչության



կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակն աստիճանաբար մերձեցնելու ուղղությամբ: Այդ համապատասխանում է բանվոր դասակարգի՝ վորպես մեր հասարակության առաջավոր դասակարգի՝ կողմից գյուղացիությանն ոգնություն ցույց տալու խնդրին, գյուղացիություն, վորը դարեր շարունակ գտնվել է ավելի ցածր մակարդակի վրա:

Կոլխոզային գյուղը գնալով ավելի մեծ պահանջ է ներկայացնում ապրանքների նկատմամբ, այդ թվում նաև այնպիսիների, վորոնք առաջ գյուղում ամենևին չեյին գործածվում:

1938 թվին գյուղացիական ազգաբնակչության յուրաքանչյուր շնչին վաճառված է յեղել 2,8 անգամ ավելի բամբակեղեն գործվածք, քան 1933 թվին, կաշվե վոտնաման՝ 2,5 անգամ, լվացքի օճառ՝ 4,9, տուալետի օճառ՝ 7, շաքար՝ 7,8 անգամ ավելի և այլն:

1938 թվին գյուղում կահույքեղեն է վաճառվել համարյա 13 անգամ ավելի, քան 1933 թվին, հեծանիվներ՝ 53 անգամ, գրքեր, յերաժշտական գործիքներ, ֆոտո, ռադիո և այլ կուլտապրանքներ՝ համարյա

6 անգամ ավելի, քան 1932 թվին: Այդպիսին են ընդհանուր թվերը:

Ահա յերկու օրինակ:

Մոսկվայի մարզի Կրասնոպոլյանսկի ռայոնի Սուխարևո գյուղը: Չորս տարում, 1935 թվից մինչև 1939 թիվը, տեղական կոոպերատիվն իր շրջանառությունները ավելացրել է մի քանի անգամ: Հետաքրքիր է զուգադրել առանձին ապրանքների վաճառքը (հազար ռուբլիներով).

| | 1935 թ. | 1939 թ. |
|---|---|---|
| Պատրաստի հագուստեղեն | 3,6 | 48 |
| Բամբակեղեն գործվածքներ | 11,1 | 102 |
| Վոտնաման | 4,1 | 41 |
| Լվացքի օճառ | 6,4 | 63 |
| Շաքար | 38,1 | 377 |
| Հրուշակեղեն | 48,9 | 320 |
| Պապիրոս | 4,9 | 177 |

Սուխարևոյի գյուղկոոպում պապիրոսները սկսել են դուրս մղել տրադիցիոն մախորկան: Պահանջմունքն իր բնույթով ավելի ու ավելի յե մոտենում քաղաքայինին:

Մի ուրիշ գյուղ— Կամենեց-Պոդոլսկի



մարզի Դունաևեցկի ռայոնի Ջելենչի գյուղը: 1935 թվին տեղական գյուղկոոպը վաճառել եր 230 հազար ռուբլու ապրանք, իսկ 1939 թվին՝ 1.724 հազար ռուբլու, այսինքն՝ 7,5 անգամ ավելի: Տարեց-տարի աճում է շրջանառությունը, բարձրանում է կուլտ-ապրանքների, պարֆյումերիայի, մուշտակեղենի տեսակարար կշիռը և այլն:

Համեմատենք Ջելենչի գյուղի գյուղկոոպի մի քանի ապրանքների վաճառքը վերջին յերկու տարում (հազար ռուբլիներով).

| | 1938 թ. | 1939 թ. |
|---|---|---|
| Պատրաստի հագուստեղեն և գլխարկ | 152,7 | 280,4 |
| Բամբակեղեն գործվածքներ | 168,8 | 225,3 |
| Վոտնաման | 66,8 | 115,5 |
| Գրքեր և զանազան կուլտապրանքներ | 9,4 | 38,5 |
| Տուալետի օճառ և պարֆյումերիա | 6,2 | 14,8 |
| Պապիրոս | 23,4 | 48,3 |

Այս բոլոր թվերը խոսում են իրենք իրենց մասին: Նրանք խոսում են ապրանքաշրջանառության և սպառման անշեղ աճ-

ման, նյութական բարեկեցության չտեսնված վերելքի մասին, որ հնարավոր է միմիայն հաղթանակած սոցիալիզմի յերկրում:

Մեզանում ընդմիշտ վոչնչացված է մարդու շահագործումը մարդու կողմից, արտադրության միջոցների և գործիքների սոցիալիստական սեփականությունը հաստատված է վորպես մեր խորհրդային հասարակության անսասան հիմք: Մեր նոր, սոցիալիստական եկոնոմիկան չգիտե ճգնաժամեր և գործազրկություն, չգիտե աղքատություն ու քայքայում և աշխատավորներին տալիս է ունևոր ու կուլտուրական կյանքի հնարավորություն:

## ԻՆՉՈ՞Ւ ԱԶԳԱԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ՊԱՀԱՆՋՄՈՒՆՔԸ ՏԱԿԱՎԻՆ ԱՄԲՈՂՋԱՊԵՍ ՉԻ ԲԱՎԱՐԱՐՎՈՒՄ

Ուժեղ չափով բարձրացել է ԽՍՀՄ-ի ժողովրդների, մեր յերկրի բոլոր աշխատավորների— բանվորների, գյուղացիների, ծառայողների նյութական-կուլտուրական մակարդակը:

Հենց միայն յերկրորդ հնգամյակի տարիներին աշխատավարձի ֆոնդը վողջ ժո-



ղովրդական տնտեսության գծով ավելացել է 2,5 անգամ, թեև ըստ պլանի նշված եր ավելացում լոկ 55%-ով: Աշխատավարձի ֆոնդի այս չեշտակի ավելացումն արդյունք է բանվորների և ծառայողների ընդհանուր թվի ավելացման, ինչպես նաև աշխատավարձի զգալի բարձրացման: Արդյունաբերական բանվորների տարեկան միջին աշխատավարձը 1933 թվին կազմում եր 1513 ռուբլի, իսկ 1938 թվին՝ 3447 ռուբլի— ավելացում ավելի քան 2 անգամ: 1939 թվին շարունակվեց աշխատավարձի հետագա աճումը:

Բանվորական բյուջեների հետազոտությունը ժողովրդա-տնտեսական հաշվառման Մոսկվայի քաղաքային վարչության կողմից՝ ցույց է տալիս, վոր բանվորական ընտանիքի մեկ անդամին ընկնող յեկամուտները 1937 թվից մինչև 1939 թիվն ավելացել են ավելի քան 45%-ով:

Արագորեն աճում են կոլխոզային գյուղացիության յեկամուտները: Ըստ ժողովրդա-տնտեսական հաշվառման կենտրոնական վարչության հաշվարկների, կոլխոզնիկների անհատական յեկամուտները յուրաքանչյուր ընտանիքում յերկրորդ

հնգամյակի տարիներին բարձրացել են ավելի քան 2 անգամ:

Մասսաների բարձրացող բարեկեցության ակնառու վկայություն է հանդիսանում խնայողական դրամարկղների ավանդների աճումը: Երկրորդ հնգամյակի սկզբին այդ դրամարկղներում պահվում էր 1 միլիարդ ռուբլի: Իսկ հիմա հենց միայն 1939 թվին ստացվել է 1 միլիարդ ռուբլու լրացուցիչ ավանդ: Առ 1-ը հունվարի 1939 թվի ազգաբնակչության ավանդները կազմում էյին ավելի քան 6 միլիարդ ռուբլի, իսկ առ 1-ը հունվարի 1940 թվի ավելի քան 7 միլիարդ ռուբլի:

Անշեղորեն բարձրանում է ազգաբնակչության գնողունակությունը: Նա ավելի արագ է աճում, քան ապրանքաշրջանառությունը, քան այն զանազան ապրանքների արտադրությունը, վորոնց նկատմամբ ազգաբնակչության աճման, աշխատավարձի ու ժողովրդի կուլտուրական մակարդակի բարձրացման հետևանքով ավելի ու ավելի մեծ պահանջներ են առաջադրվում: Այդ իսկ պատճառով մի շարք ապրանքների պահանջմունքն ամենեվին էլ լրիվ չի բավարարվում:

Ապրանքների արտադրությունը մեր



յերկրում աճում է շատ արագ, այնպիսի տեմպերով, վորպիսիք չի ճանաչել և չի ճանաչում վոչ մի կապիտալիստական յերկիր: Հենց միայն յերկրորդ հնգամյակի տարիներին սպառման առարկաների արտադրությունն ավելացել է 2 անգամ, իսկ այնպիսի ապրանքներինը, ինչպես շաքար, կենդանական յուղ, կալբասեղեն, տրիկոտաժ, վոտնաման,— է՛լ ավելի:

Սակայն, արտադրության այդ ավելացումը տակավին քիչ է պահանջմունքը լրիվ չափով բավարարելու համար, վորովհետև ժողովրդի պահանջմունքներն ավելանում են է՛լ ավելի արագ թափով:

Ինչո՞վ է բացատրվում այդ: Այդ բացատրվում է նրանով, վոր դեռևս վոչ վաղ անցյալում մեր յերկիրը չափազանց հետամնաց էր արդյունաբերական տեսակետից և, ազգաբնակչության մեծ թվի շնորհիվ, ուներ ազգաբնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող արդյունաբերական պրոդուկցիայի արտադրության շատ ցածր նորմաներ:

Բնորոշ է, վոր նախահեղափոխական Ռուսաստանը վոչ միայն չէր հասնում առավել զարգացած կապիտալիստական յերկրներին, այլ, ընդհակառակը, ավելի ու

ավելի յեր հետ մնում արտադրության մի շարք ճյուղերում:

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ հեղափոխությունը, ստալինյան հնգամյակները մեր արդյունաբերությունը հասցրին բարձր մակարդակի: Սակայն, անցած պատմականորեն կարճ ժամանակամիջոցում անհնար եր ամբողջապես տեղը հանել:

Այժմ մեր յերկիրն ընդհուպ մոտեցել է հիմնական տնտեսական խնդրի— ազգաբնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող արտադրության մակարդակի գծով ևս առավել զարգացած կապիտալիստական յերկրներին հասնելու և անցնելու խնդրի լուծմանը: Այս խնդիրը լուծելով միայն հնարավոր է հասնել այն բանին, վոր մեր յերկիրն ամբողջապես հագեցած լինի սպառման առարկաներով, վոր մեզանում լինի մթերքների առատություն: Յերրորդ հնգամյա պլանն այս տեսակետից խոշոր առաջընթաց է կատարում:

Ծրագրված է 1942 թվին ազգաբնակչության յուրաքանչյուր շնչի համար արտադրել 25%-ով ավելի բամբակեղեն գործվածք, քան 1937 թվին, վոտնաման՝ 40%-ով, շաքար՝ 35%-ով, ոճառ՝



70%-ով և այլն: Ըստ վորում հարկավոր է հաշվի առնել, վոր Խորհրդային Միության ազգաբնակչությունն աճում է չափազանց արագ: 1926–1939 թվականներին ԽՍՀՄ-ի ազգաբնակչության աճի տեմպը 2 անգամ ավելի յե յեղել, քան Ամերիկայի Միացյալ Նահանգներում և Գերմանիայում, 3,5 անգամ ավելի, քան Անգլիայում:

Ազգաբնակչության արագ աճումը, նրա յեկամուտների անշեղ բարձրացումը պահանջում են ամեն կերպ զարգացնել ապրանքների արտադրությունը, դրա համար ոգտագործել բոլոր հնարավորությունները: Ընկ. Մոլոտովը Մոսկվայի Խորհրդի հանդիսավոր նիստում, վորը նվիրված եր Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ հեղափոխության 21-րդ տարեդարձին, ասում եր.

«Բանվորների աշխատավարձերն ու գյուղացիների յեկամուտներն արագորեն աճում են: Մենք չենք կարողանում արդյունաբերական ապրանքների արտադրությունը հասցնել աճող պահանջմունքին: Այս, իհարկե, մեզ համար արդարացում չե: Մենք պետք է սովորենք հասնել այդ պահանջմունքին, մենք պետք է շատ ավե-

ևս արագ զարգացնենք մեր արդյունաբերությունը, շատ ավելի արագ ավելացնենք լայն սպառման ապրանքների արտադրությունը, պետք է զարգացնենք ոչ միայն խոշոր ու միջակ, այլև մանր, ինչպես և տնայնագործական ձեռնարկությունները, որոնք կավելացնեն հարկ յեղած արդյունաբերական ապրանքների քանակը»:

Օգտագործել բոլոր հնարավորությունները լայն սպառման ապրանքների և սննդամթերքների արտադրությունը զարգացնելու համար— դա կարևորագույն խնդիր է:

Ապրանքների արտադրությունն ավելի լայն ծավալել հարկավոր է նաև այն պատճառով, որ ժողովրդատնտեսական պլանը նախատեսում է ստեղծել անհրաժեշտ պաշարներ և ռեզերվներ: Խորհրդային տնտեսության վիթխարի մասշտաբների պայմաններում չի կարելի նորմալ կերպով աշխատել առանց պաշարների: «Բայց մեզ հարկավոր են ոչ միայն ընթացիկ պաշարներ,— ասում էր ՀամԿ(բ)Կ 18-րդ համագումարում ընկեր Մոլոտովը:— Մեզ հարկավոր են, բացի այդ, վառելանյութի, էլեկտրոէներգիայի, արդյունաբերական



ապրանքների և պարենի պետական ռեզերվներ, չխոսելով արդեն յերկաթուղիների և տրանսպորտի այլ տեսակների համապատասխան զարգացման մասին: Սրա անհրաժեշտությունը կարիք չկա ապացուցել, մանավանդ ԽՍՀՄ-ի պաշտպանության կարիքներն ապահովելու մեր պարտականության առնչությամբ»:

Միջազգային լարված իրադրության ներկա պայմաններում ռեզերվներ ստեղծելու խնդիրն առանձնապես պարզ է: Յուրաքանչյուր քաղաքացու, յուրաքանչյուր աշխատավորի հասկանալի յե, որ պաշտպանունակության պայմաններից մեկն է հանդիսանում անհրաժեշտ տնտեսական ռեզերվների, այդ թվում արդյունաբերական ապրանքների և պարենի առկայությունը պետության ձեռքում: Ուստի առավել ևս կարևոր է ավելի լայն ծավալել այդ ապրանքների արտադրությունը, որպեսզի հնարավոր լինի թե՛ ավելի լավ ապահովել ազգաբնակչության ընթացիկ պահանջները և թե՛ անհրաժեշտ ռեզերվներ կուտակել:

Լայն սպառման ապրանքների արտադրությունն ավելացնելու համար հարկավոր է օգտագործել այն բոլոր հնարավո-

ությունները, վորոնցով հարուստ են յուրաքանչյուր հանրապետություն և՛ մարզ, յուրաքանչյուր յերկրամաս և ռայոն մեր յերկրում: Տեղերում արտադրության զարգացումը պետք է վոչ միայն ավելացնի ընդհանուր ապրանքային մասսան, այլև լավացնի ապրանքների ասորտիմենտը. տեղական ձեռնարկությունները կարող են ավելի ճիշտ հաշվի առնել գնողների առանձին խմբերի պահանջները: Դրա հետ մեկտեղ ապրանքների տեղական արտադրության ծավալումը պետք է բեռնաթափի տրանսպորտն ապրանքների ավելորդ փոխադրումներից: ՀամԿ(բ)Կ 18-րդ համագումարը ԽՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման յերրորդ հնգամյա պլանի մասին ընդունած բանաձևում տվեց հետևյալ դիրեկտիվը.

«Ամենուրեք մասսայական քանակությամբ գործածվող այնպիսի սննդամթերքներ, ինչպես կարտոֆել, բանջարեղեն, կաթնամթերքներ և մսամթերքներ, հրուշակեղեն, գարեջուր, ինչպես նաև մասսայական սպառման մի շարք արդյունաբերական ապրանքներ — գալանտերեա, կարի արդյունաբերության ար-



տադրանքներ, կահույքեղեն, աղյուս, կիր և այլն, պետք է բավարար քանակությամբ արտադրվեն յուրաքանչյուր հանրապետության մեջ, յերկրամասում և մարզում»:

Այս դիրեկտիվի կատարումը վիթխարի նշանակություն կունենա վողջ ժողովրդական տնտեսության համար, ապրանքաշրջանառության հետագա զարգացման և ազգաբնակչության պահանջների լավագույն բավարարման համար:

## ԱՎԵԼԻ ՇԱՏ ՏԵՂԱԿԱՆ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅՈՒՆ

Ինչքան էլ վոր աճելիս լինի այն պլանային արտադրանքը, վոր արտադրում է մեր խոշոր և միջակ արդյունաբերությունը, չի կարելի միայն նրանով բավարարել ազգաբնակչության հարաճուն ու բազմազան պահանջները: Անհրաժեշտ է օգտագործել տեղական հումքը, զանազան մնացորդները և այլն, ապրանքների լրացուցիչ արտադրության համար տեղական արդյունաբերության, արհեստագործական կոոպերացիայի, ուտիլցեխերի ցանցում և այլն:

Կառավարությունն անում է ամեն ինչ, վորպեսզի առաջ շարժի լրացուցիչ ապ-

րանքների տեղական արտադրությունը: Հատուկ միջոցներ են տրամադրվում նոր ձեռնարկություններ կազմակերպելու համար: Որինակ՝ ՌԽՖՍՀ պետական բյուջեյով 1940 թվին տեղական արդյունաբերությանը բաց է թողնվում ավելի քան 260 միլիոն ռուբլի լայն սպառման ապրանքների արտադրությունը զարգացնելու համար: Պետական բանկը հատուկ վարկեր է բաց անում այն ձեռնարկությունների համար, վորոնք լրացուցիչ ապրանքներ են արտադրում: Կառավարության մի շարք վորոշումներն ուղղված են դեպի տեղական հնարավորությունների լավագույն օգտագործումը: Վերջերս, որինակ, ԽՍՀՄ Ժողկոմխորհին կից Տնտեսական Խորհուրդը ցուցում տվեց ձկան վորսը տեղական միջոցներով զարգացնելու մասին. տեղական միջոցներով ձեռք բերված ձուկը մնում է տեղական կարիքների համար՝ կենտրոնացած մատակարարման պետական պլանից դուրս:

Ավելի՛ շատ տեղական նախաձեռնություն—ահա թե ի՛նչ է պահանջվում ապրանքների լրացուցիչ արտադրությունը զարգացնելու համար: Բայց հենց այդ նախաձեռնությունն է հաճախ պակասում:



Պակասում է, մասնավորապես, առևտրական կազմակերպություններում: Նրանք հաճախ սպասում են, թե յե՛րբ նրանց «ֆոնդեր» կուղարկեն կենտրոնացած պլանով, փոխանակ իրենք համառորեն լրացուցիչ նոր ապրանքներ վորոնելու:

Տուլան կարևոր արդյունաբերական կենտրոն է: Այստեղ կան մեծ գործարաններ, վորոնք իրենց տրամադրության տակ ունեն բազմաթիվ ավելցուկներ, վորոնցից կարելի յե լայն սպառման զանազան ապրանքներ արտադրել: Սակայն մինչև այժմ զանազան մարզերից Տուլա եյին ներմուծում այնպիսի ապրանքներ, ինչպես դուտայլին, պրիմուսի ասեղներ, կրակախառնիչներ, շաքարի ունելիներ և այլն: Բայց բավական յեղավ ուշադրությամբ ստուգել տեղական հնարավորությունները, և իսկույն պարզվեց, վոր այս տարի կարելի յե արտադրել լրացուցիչ ապրանքներ— եժան կոզպեքներ, թեյամաններ, սրճամաններ, կեռունելիքներ, դուտայլին, տոնածառի զարդարանքներ, տաշած փայտից խաղալիքներ և այլն, առնվազն 20 միլիոն ռուբլու:

ՌԽՖՍՀ Առևտրի Ժողկոմատի բրիգադաները վերջերս ստուգեցին մի շարք մարզե-

րի հնարավորությունները: Նախնական հաշվարկները ցույց են տալիս, վոր 16 մարզերում կարելի յե այս տարի լրացուցիչ կերպով ստանալ առնվազն մեկ միլիարդ ռուբլու լայն սպառման ապրանքներ և սննդամթերքներ:

Տեղական նախաձեռնության լայն դըրսևորումը, այսպես կոչված ապակենտրոնացած գնումների զարգացումն առևտրական կազմակերպությունների կողմից՝ հաջող առևտրի պարտադիր պայմանն են: Այն առևտրական կազմակերպությունները, վորոնք ընթանում են այս ուղիով, ավելի լավ են կատարում ապրանքաշրջանառության պլանը, իրենց գնորդներին տալիս են ավելի շատ ապրանք: Մյուսների մոտ եյական բացեր կան ասորտիմենտի մեջ: Իսկ ապրանքներից վոմանց պակասը, ազգաբնակչության բարձր գնողունակության պայմաններում, արհեստականորեն ստեղծում է աննորմալ չափով բարձր պահանջմունք մյուս տարկաների նկատմամբ: Այդպես յերբեմն խափանումներ են ստեղծվում այն ապրանքների առևտրում, վորոնք յերկրում կան միանգամայն բավարար քանակությամբ:

Միխայիլ Իվանովիչ Կալինինը 1939



թվի հունիսին հանդես գալով սպառողական կոոպերացիայի աշխատողների ակտիվի համամիութենական խորհրդակցությանը, ասաց. «կուլտուրական առևտրի հիմքը բավարար քանակությամբ, բավարար ասորտիմենտի և լավ վորակի ապրանքների առկայությունն է»: Դրան հասնելու համար առևտրական աշխատողները պետք է «խթանեն և զրգռեն արդյունաբերությունը վորպես խմորիչներ, վորպես դրդիչ միկրոբներ», պետք է «հարկադրեն արդյունաբերությանն ու տնայնա–արհեստագործական կոոպերացիային արտադրելու ազգաբնակչության սպառողական պահանջների բավարարման համար անհրաժեշտ ամենաբազմազան ապրանքներ և անգամ ստեղծեն, կյանքի կոչեն արտադրության նոր ճյուղեր»:

Յեթե հենց այս կերպ գործեյին բոլոր առևտրական կազմակերպությունները, խորհրդային պետական և կոոպերատիվ առևտրի բոլոր աշխատողները, այն ժամանակ ե՛լ ավելի կընդարձակվեր ապրանքաշրջանառությունը, շատ ավելի լիովին կբավարարվեյին ազգաբնակչության պահանջմունքները, մի շարք ապրանքների պակաս չեր զգացվի:

Զնայած աշխատանքի հսկայական թափին, շրջանառությունների չեշտակի աճմանը, խանութների ցանցի զարգացմանը, պետական և կոոպերատիվ առևտուրը չի կարող ամբողջապես սպասարկել ազգաբնակչության պահանջմունքները, նրան մատակարարել բոլոր ապրանքները: «Խորհրդային առևտրի ծավալման համար անհրաժեշտ է ոգտագործել բոլոր կանալները—և՛ կոոպերատիվ ցանցը, և՛ պետական-առևտրական ցանցը, և՛ կոլխոզային առևտուրը» *):

Կոլխոզային առևտուրը կոչված է աչքի ընկնող դեր խաղալ ազգաբնակչությանը գյուղատնտեսական մթերքներ մատակարարելու գործում: Զարգացնելով և ճիշտ կազմակերպելով կոլխոզային առևտուրը, կարելի յե շուկա քաշել հսկայական քանակությամբ լրացուցիչ մթերքներ: Դնեպրոպետրովսկում, որինակ, կոլխոզ-շուկաները բերվող միսը, ճարպը, կաթը և մի քանի այլ մթերքները կազմում են քաղաքի պահանջմունքի 70—75 տոկոսը: Սակայն,

---

*) Ի. Ստալին.— «Լենինիզմի հարցերը», եջ 389, 11-րդ հրատ.:



յերկրի շատ կետերում կոլխոզային առևտուրը դեռևս հարկ յեղած զարգացումը չի ստացել, շուկաները դեռևս բավարար նեցուկ չեն հանդիսանում պետական և կոոպերատիվ առևտրի համար:

Ինչո՞ւ Դնեպրոպետրովսկում կարողացել են ձեռք բերել կոլխոզ-շուկայական առևտրի հաջող զարգացում: Որովհետև այստեղ վոչ թե մատնել են ինքնահոսին, այլ լրջորեն են ձեռնամուխ յեղել գործին: Կոլխոզ-շուկաների վարչությունը սերտորեն կապված է կոլխոզների հետ, նրանց ոգնում է կազմակերպելու պրոդուկցիայի արտահանումը, հոգում է յեկվոր կոլխոզնիկների սպասարկման մասին և այլն:

Ուժեղացնելով կապերը կոլխոզների հետ, կարելի յե զգալիորեն ուժեղացնել գյուղատնտեսական մթերքների հոսանքը: Մի շարք տեղերում մեծ խզում է նկատվում պետական-կոոպերատիվ առևտրի և կոլխոզային առևտրի գների միջև: Մթերքների ներմուծման ուժեղացումը, կոլխոզների մշտական հանդես գալը շուկաներում կոլխոզային առևտրի գների իջեցման անհրաժեշտ պայմանն է:

Վերջերս փոփոխվեցին մի քանի ապ-

րանքների գները պետական և կոոպերատիվ առևտրում։ Ինչի՞ արդյունք ե այդ։ Առանձին ապրանքների գների մեջ անհամապատասխանություն գոյություն ուներ, որը հանգում եր նրանցից ոմանց նկատամամբ ավելի բարձր պահանջմունքի։ Հարկավոր եր ուղղել մի քանի ապրանքների գները, այդ անհամապատասխանությունը վերացնելու համար։

Մի քանի պարենային ապրանքների գների փոփոխումը սեզոնային բնույթ ե կրում։

Հասկանալի յե, որ ասենք, ամբողջ ձմեռվա ընթացքում հատուկ պահեստներում պահվող կարտոֆիլն այժմ ավելի թանգ ե նստում, քան նրա մասսայական ստացման ժամանակաշրջանում։ Միսն ի հնուց, գարնանը և ամռանն ավելի թանգ ե գնահատվել։ Այդ բացատրվում ե նրանով, որ անասուններին քշում են արոտավայրերը, անասունների վաճառքը համարյա դադարում ե, և այդ պատճառով նրա մթերումներն զգալիորեն ավելի թանգ են նստում, չխոսելով արդեն այն լրացուցիչ ծախքերի մասին, որոնք կապված են գարնան և ամառվա ժամանակաշրջանում միսը պահելու հետ։



## ԱՌԵՎՏՐԱԿԱՆ ԱՊԱՐԱՏԸ ՊԵՏՔ Ե ԱՇԽԱՏԻ ՈՐԻՆԱԿԵԼԻ ԿԵՐՊՈՎ

Ապրանքների պակասը, խափանումներն առևտրի մեջ յերբեմն լինում են ոչ թե այն պատճառով, որ այդ ապրանքները յերկրում քիչ են, այլ բացառապես առևտրական ապարատի առանձին օղակների և աշխատողների մեղքով։

Առևտրի մեջ առաջացած խափանումներից փորձում են օգտվել սպեկուլյատիվ ելեմենտները— լիկվիդացիայի յենթարկված դասակարգերի մնացորդները, նախկին կուլակները, առևտրականները։ Նրանք գնում են զանազան ապրանքները, արհեստականորեն մեծացնում են նրանց պահանջմունքը, հերթեր են ստեղծում, ապրանքները վերավաճառում են խիստ բարձր գներով։ Այդ սպեկուլյանտները փորձում են միանալ վաճառասեղանի աշխատողների մեջ յեղած անկայուն ու խորթ ելեմենտների հետ։ Մի քանի առևտրական ծառայողներ ապրանք են մատակարարում սպեկուլյանտներին, նրանց հաղորդում են այս կամ այն ապրանքների ստացման մասին, և այլն։

Հարկավոր ե վճռականորեն ուժեղացնել պայքարը սպեկուլյացիայի դեմ։

Դա միլիցիայի, քննչական օրգանների, դատարանի գործը չէ միայն:

Դա առևտրական աշխատողների պարտականությունն է, վորոնք պետք է ավելի աչալուրջ լինեն, ավելի անհաշտ կերպով հետևեն իրենց շարքերի մաքրությանը, թույլ չտան հանցագործ գործարքներ ապրանքների գնորդների հետ, խորհրդային վաճառասեղանից վանդեն սպեկուլյանտների ագենտներին, այնպես կազմակերպեն բազաների, խանութների, կրպակների աշխատանքը, վորպեսզի սպեկուլյանտների առաջ փակեն նրանց ջլատիչ աշխատանքի ամեն տեսակի սողանցքներն ու ճեղքերը:

Դա բոլոր աշխատավորների, բոլոր խորհրդային քաղաքացիների խնդիրն է, վորոնք պետք է վճռականորեն հրաժարվեն սպեկուլյանտների «ծառայություններից», մերկացնեն նրանց, ամեն կերպ օգնեն առևտրական աշխատողներին, միլիցիային, դատարանին, պայքարելու սպեկուլյացիայի—նողկալի անցյալի այդ ժառանգության դեմ, վորը խորթ է խորհրդային հասարակությանը:

Առևտրին մեծ վնաս են հասցնում չափից դուրս «պաշարատես» մի քանի մարդիկ, վորոնք ապրանք են գնում «պաշարի համար»: Այդպիսի մարդիկ կան թե՛ քաղաքային և թե՛ գյուղական բնակչության մեջ: Նրանց գիտակցության մեջ դեռևս շատ ուժեղ են կապիտալիզմի մնացուկները. նրանք պատրաստ են հավատալ ամեն տեսակի լուրերի, թե այսինչ ապրանքը «չի լինելու», հաճույքով հաղորդում են այդ լուրերն ուրիշներին, առանց մտածելու այդ լուրերի ծագման մասին, այն մասին, վոր դրանք տարածում են թշնամական, հակախորհրդային էլեմենտները, վորոնք ձգտում են կազմալուծել առևտուրը: Յեվ ահա այդ «պաշարատես» մարդիկ խանութներից գնում են այն, ինչ իրենց հարկավոր է, և այն, ինչ իրենց հարկավոր չէ:



Պաշարի համար գնելով մանուֆակտուրա և կոշիկ, լուցկի և աղ, շաքար և յուղ, մարդիկ արհեստականորեն սրում են ապրանքների պահանջը, խափանումներ են ստեղծում առևտրում, դժվարացնում են նրանց գնումն այն քաղաքացիների կողմից, վորոնց այդ ապրանքները հարկավոր են ընթացիկ պահանջմունքները բավարարելու համար: Մոսկվայում, օրինակ, 1939 թվի 4-րդ յեռամսյակում համարյա 2 անգամ ավելի շաքար է վաճառվել, քան 1938 թվի

նույն ամիսներին: Պահանջմունքի այսպիսի ուժեղ բարձրացումը, անկասկած, կապված է այն բանի հետ, վոր ազգաբնակչության հետամնաց էլեմենտները շաքարի պաշար են տեսել «ամեն դեպքի համար»:

Այս բանը հարկավոր է լայնորեն բացատրել բնակչությանը, մասսաներին մոբիլիզացիայի յենթարկելով պայքարել առևտրի կազմալուծման ամեն տեսակի փորձերի դեմ: Նրանց, վորոնք այս ճանապարհն են բռնում իրենց հետամնացության, անգիտակցականության հետևանքով, պետք է բացատրել, վոր պաշարի համար ապրանք գնող մարդիկ օբյեկտիվորեն վնաս են հասցնում խորհրդային առևտրին, իրենց պետությանը, բոլոր աշխատավորներին:

Մեր յերկրի առևտրական ձեռնարկությունների մեջ կան զգալի թվով խանութներ, վորոնք կուլտուրական ձևով են կազմակերպում աշխատանքը, առևտրական ծառայողների մեջ քիչ չեն ստախանովականները, վորոնք բոլշևիկորեն են սպասարկում գնորդներին, իրենց գործի հանդեպ ազնիվ ու նվիրված վերաբերմունքի օրինակներ են ցույց տալիս: Սակայն, առևտրական ապարատի աշխատանքում



դեռևս շատ կան լուրջ թերություններ:

Մինչև այժմ էլ դեռևս լինում են վոչ-ճիշտ պլանավորման դեպքեր: Յեթե մի մարզում կամ ռայոնում հարկ յեղածից ավելի ապրանք է բերված, իսկ մյուս մարզում՝ հարկ յեղածից պակաս, ապա, հասկանալի յե, այդ կարող է խափանումներ առաջացնել առևտրի մեջ և առաջացնում է յերբեմն: Յերբեմն այդպիսի փաստեր նկատվում են նույնիսկ մի քաղաքի սահմաններում: Մի խանութում այսինչ ապրանք ինչքան ուզեք, իսկ մյուսում՝ չկա. դրա պատճառով խափանումներ, հրհրոց, հերթեր: Իսկ դուրս է գալիս, վոր ապրանք բերելու պլանը ճիշտ չի կազմվել, կամ բազան ճիշտ չի մատակարարել խանութներին, կամ առևտրական տրանսպորտը ժամանակին չի բերել ապրանքը: Լինում է նաև, վոր մեղավոր է ինքը՝ խանութի դիրեկտորը, վորը հաշվի չի առել պահանջմունքը, չի հոգացել ժամանակին ստանալու անհրաժեշտ ապրանքը:

Ահա թե ինչո՛ւ ապրանքը բերելու և հասցնելու գործի ճիշտ կազմակերպումը, առևտրական բազաների և տրանսպորտի հստակ աշխատանքը, խանութի դիրեկտորի նախաձեռնությունը, ճարտարությունը և

համապատասխանությունն այնքան մեծ նշա-
նակություն ունեն լուրջ կուլտուրական
խորհրդային առևտրի զարգացման համար,
գնորդների անխափան սպասարկման համար:
Հարկավոր է վերջ տալ անկուլտուրակա-
նությանը և անկազմակերպվածությանը,
վորոնցով աչքի յեն ընկնում վոչ քիչ թվով
առևտրական ձեռնարկություններ: Վերց-
նենք այնպիսի մի հարց, ինչպես ապրանք-
ները վաղորոք վաճառքի համար պատրաս-
տելը: Շատ մթերային խանութներում
թափվող ապրանքները՝ կրուպա, ալյուր,
շաքար, յուղը և մի շարք այլ ապ-
րանքներ վաղորոք կշռվում են, վիչինան
և կալբասը վաղորոք կտրտվում են մեքե-
նաներով և այլն: Այդ բանը հնարավորու-
թյուն է տալիս զգալիորեն արագացնել
ապրանք բաց թողնելու գործը, տնտեսում
է գնորդների ժամանակը և բարձրացնում է
վաճառողների աշխատանքի արտադրողա-
կանությունը: Բայց մի քանիսն էլ նախ-
ընտրում են աշխատել հին ձևով, առանց
մտածելու գնորդների հարմարությունների
մասին, աշխատանքն ավելի լավ կազմա-
կերպելու մասին:
Կան այնպիսի դեպքեր էլ, յերբ խեղա-
թյուրվում է լավ ձեռնարկումը: Գնորդնե-



րը պահանջ են ներկայացնում զանազան
քանակությամբ, ասենք, կրուպայի, ալյու-
րի կամ շաքարի. մեկին հարկավոր է մի
կիլոգրամ, իսկ մյուսը ցանկանում է գնել
միայն 500 գրամ, իսկ խանութի անհեռա-
տես աշխատողները պատրաստել են միայն
մեկական կիլոգրամանոց ծրարներ—ուզում
ես՝ վերցրու, ուզում ես՝ մի վերցրու:
Այս արմատապես հակասում է կուլտու-
րական առևտրի սկզբունքներին:
Նկատվում են ապրանքների փչացման
փաստեր այն բանի հետևանքով, վոր ան-
փույթ են փոխադրում կամ ճիշտ ձևով
չեն պահում, վոչ-լավորակ պրոդուկցիան
վաճառքի հանելու, սանիտարական և ա-
ռողջապահության կանոնները խախտելու
փաստեր: Այժմ, յերբ սկսվում է ամառը,
առանձնապես կարևոր է կանխել այս յե-
րևույթները: Ամեն ինչ, սառցարանային
սարքավորումից և սառցարանից մինչև
վենտիլյատորները և ճանճերի դեմ պայ-
քարելու պարզագույն հարմարանքները,
պետք է ճշտիլ և ժամանակին օգտագործել
մթերքների պահպանման և խանութնե-
րում, կրպակներում ու ճաշարաններում
մաքրություն պահպանելու համար:
Մեծ չարիք է գնորդներին հաշվի մեջ

խաբելը, թերաչափումը և թերակշռումը: Այդպիսի փաստեր քիչ չեն: Վաճառասեղանի աշխատողների մեջ դեռ կան մարդիկ, վորոնք վոչ միայն անտարբեր են վերաբերվում ազգաբնակչությանն սպասարկելու ուղղությամբ իրենց հանձնարարված գործին, այլև ուղի են փնտրում վաստակել ի հաշիվ գնորդների և ի հաշիվ պետության: Այդպիսի մարդիկ ոգտվում են այն բանից, վոր շատ ձեռնարկություններում դեռևս չկա աչալուրջ վերահսկողություն, և աշխատում են մերթ թերակշռել վորևէ ապրանք, մերթ պակաս լցնել ջուրը կամ սիրոպը, մերթ մի վորևէ ապրանք դուրս գրել վորպես փչացած, իսկ իրականության մեջ յուրացնել և այլն: Շատ առևտրական ձեռնարկություններում դեռևս մեծ են շռայլումները և հափշտակումները:

Անազնիվ վերաբերմունքը սեփական պարտականությունների հանդեպ յերևան է գալիս նաև ապրանքը «տակից» բաց թողնելու մեջ: Վաճառողը վաղորոք նախազգուշացնում է իր ծանոթին, վոր այսինչ լավ ապրանքն է ստացված, յերբեմն այդ ապրանքը մինչև իսկ վաճառասեղանի վրա չի յերևում, այլ ծախվում է «յուրային-



ների մեջ»: Այստեղից մի քայլ է միայն մինչև սպեկուլյացիային ուղղակի աջակցելը, վորովհետև այդ «ծանոթները» հաճախ զբաղվում են գնելով և վերավաճառելով: Բայց, դրանից անկախ, ապրանքները «ծանոթությամբ», «սև մուտքից» և նման այլ յեղանակներով բաց թողնելը կազմալուծում է առևտուրը և առևտրական աշխատողի կողմից հանցագործություն է հանդիսանում, վորի դեմ պետք է վճռականորեն պայքարել:

Խորհրդային առևտրի աշխատողներին պետությունը հանձնարարել է ազգաբնակչության ամենորյա կարիքներին սպասարկելու պատվավոր ու պատասխանատու գործը, վստահել է միլիարդների նյութական արժեքներ: Ծառայողների ճնշող մասսան ազնվությամբ կատարում է իր պարտականությունները, բարեխիղճ կերպով պահպանում է սոցիալիստական սեփականությունը: Բայց հենց այն բանի համար, վոր առևտրական ձեռնարկությունների միջոցով անց են կենում ապրանքների հսկայական մասսաներ, վիթխարի դրամական գումարներ, հենց այդ բանի համար այստեղ, ինչպես թիթեռները դեպի լույսը, սողոսկում են խորթ, պարազիտային ելե-

խաբելը, թերաչափումը և թերակշռումը: Այդպիսի փաստեր քիչ չեն: Վաճառասեղանի աշխատողների մեջ դեռ կան մարդիկ, որոնք ոչ միայն անտարբեր են վերաբերվում ազգաբնակչությանն սպասարկելու ուղղությամբ իրենց հանձնարարված գործին, այլև առիթ են փնտրում վաստակել ի հաշիվ գնողների և ի հաշիվ պետության: Այդպիսի մարդիկ օգտվում են այն բանից, որ շատ ձեռնարկություններում դեռևս չկա աչալուրջ վերահսկողություն, և աշխատում են մերթ թերակշռել որևէ ապրանք, մերթ պակասցնել ջուրը կամ սիրոպը, մերթ մի որևէ ապրանք դուրս գրել որպես փչացած, իսկ իրականության մեջ յուրացնել և այլն: Շատ առևտրական ձեռնարկություններում դեռևս մեծ են շռայլումները և հափշտակումները:

Անտարբեր վերաբերմունքը սեփական պարտականությունների հանդեպ յերևան է գալիս նաև ապրանքը «տակից» բաց թողնելու մեջ: Վաճառողը վաղօրոք նախազգուշացնում է իր ծանոթին, որ այսինչ լավ ապրանքն է ստացված, յերբեմն այդ ապրանքը մինչև իսկ վաճառասեղանի վրա չի յերևում, այլ ծախսվում է «յուրային-



ների մեջ»: Այստեղից մի քայլ է միայն մինչև սպեկուլյացիային ուղղակի աջակցելը, որովհետև այդ «ծանոթները» հաճախ զբաղվում են գնելով և վերավաճառելով: Բայց, դրանից անկախ, ապրանքները «ծանոթությամբ», «սև մուտքից» և նման այլ յեղանակներով բաց թողնելը կազմալուծում է առևտուրը և առևտրական աշխատողի կողմից հանցագործություն է հանդիսանում, որի դեմ պետք է վճռականորեն պայքարել:

Խորհրդային առևտրի աշխատողներին պետությունը հանձնարարել է ազգաբնակչության ամենօրյա կարիքներին սպասարկելու պատվավոր ու պատասխանատու գործը, վստահել է միլիարդների նյութական արժեքներ: Ծառայողների ճնշող մասսան ազնվությամբ կատարում է իր պարտականությունները, բարեխիղճ կերպով պահպանում է սոցիալիստական սեփականությունը: Բայց հենց այն բանի համար, որ առևտրական ձեռնարկությունների միջոցով անց են կենում ապրանքների հսկայական մասսաներ, վիթխարի դրամական գումարներ, հենց այդ բանի համար այստեղ, ինչպես թիթեռները դեպի լույսը, սողոսկում են խորթ, պարազիտային ելե-

մեանները, ջախջախված դասակարգերի բեկորները՝ պետության հաշվին, սպառողների հաշվին հեշտ վաստակ ձեռք բերելու համար: Այդ էլեմենտներն աշխատում են ոչ միայն իրենք շահվել, այլև քայքայել ազնիվ մարդկանց, իրենց պատրելի նպատակների համար ստեղծել անպատասխանատվության և անվերահսկողության իրադրություն:

Ահա թե ինչո՛ւ այնպիսի սրությամբ է դրված առևտրական կադրերին ուշի-ուշով ընտրելու և աչալուրջ կերպով ստուգելու, նրանց շարքերն ազնիվ, իրենց հայրենիքին, իրենց ժողովրդին մինչև վերջը նվիրված մարդկանցով լրացնելու խնդիրը: Ահա թե ինչո՛ւ էր ամբողջ լայնությամբ դրված է առևտրական ծառայողների մեջ ինքնաքննադատությունը ծավալելու խընդիրը: Նրանք բոլոր և յուրաքանչյուրն առանձնապես պետք է յեռանդուն կերպով պայքարեն բոլոր թերությունների դեմ առևտրի մեջ անխնա մերկացնեն խորթ ու խցկված մարդկանց, ժողովրդական բարիքի հափշտակիչներին, սպեկուլյանտների աջակիցներին:

Առևտրական ձեռնարկությունների աշխատանքի սպեցիֆիկ պայմանների հետե-



վանքով այստեղ առանձնապես կարևոր է պայքար ծավալել կապիտալիզմի մնացուկների դեմ մարդկանց գիտակցության մեջ, ուժեղացնել առևտրական ծառայողների կոմունիստական դաստիարակությունը: Կոմունիստական դաստիարակության հաջողություններից, այդ բառի լայն նշանակությամբ, կախված է բոլոր մնացած խնդիրների լուծումը:

Առևտրական ծառայողների քաղաքական դաստիարակությունը պետք է նրանց պատվաստի ազնիվ ու գիտակից վերաբերմունք դեպի աշխատանքը, սոցիալիստական շինարարության մեջ իր ունեցած խնդիրների ըմբռնում: Միայն այս կերպ կարելի է հասնել խորհրդային կուլտուրական առևտրի իսկական վերելքին: Դա մեծ պարտականություններ է դնում առևտրական ձեռնարկությունների և հիմնարկությունների կուսակցական ու պրոֆեսիոնալ կազմակերպությունների վրա:

Հարկավոր է վճռականորեն ուժեղացնել յուրաքանչյուր պահեստի, խանութի և կրպակի աշխատանքի վերահսկողությունը: Խոսքը վերաբերում է ոչ միայն բարձրադիր առևտրական օրգանների կողմից մըշտական օպերատիվ ու իրական վերահըս-

կողություն կազմակերպելուն: Լենինը և Ստալինը սովորեցնում են մեզ, որ վերահսկողությունը միայն այն ժամանակ է հասնում իր նպատակին, երբ իրագործվում է ոչ միայն «վերևից», այլև «ներքևից», երբ նրան մասնակից են դարձվում լայն մասսաները:

Այդ ի՞նչ է նշանակում առևտրի վերաբերմամբ: Խորհրդային կուլտուրական առևտրի սկզբունքների և կանոնների պահպանմանը, սոցիալիստական սեփականության անվթարությանը պետք է աչալուրջ կերպով հետևի առևտրական ծառայողների ամբողջ մասսան, յուրաքանչյուր ձեռնարկության կոլեկտիվները: Բանգյուղտեսչության լիկվիդացիայից հետո ստորին վերահսկողության ֆունկցիաները դրվեցին պրոֆմիութենական կազմակերպությունների վրա: Բայց այդ իրավունքների և պարտականությունների մասին հաճախ մոռանում են պետական առևտրի, սպառողական կոոպերացիայի և հասարակական սննդի աշխատողների պրոֆմիությունները, նրանց տեղկոմները:



Առևտուրը կարգավորելու գործում մեծ դեր պետք է խաղա առևտրական ձեռնարկությունների հասարակական-մասսայական վերահսկողությունը ֆաբրիկաների, գործարանների, հիմնարկությունների կոլեկտիվների, ինչպես նաև տնային տնտեսուհիների կողմից: Խնդիրն այն է, որ պետք է ճիշտ կազմակերպել այս գործը, հրահանգավորել վերահսկիչներին, նրանց ճիշտ դասավորություն կատարել, նրանց օգնել բռնելու գլխավորը, վճռականը, կարգի բերել փորձի փոխանակությունը նրանց միջև: Դա պրոֆեսիոնալ միությունների սրբազան պարտականությունն է:

Գյուղում հարկավոր է ուժեղացնել կոոպերատիվ խանութների, կրպակների, ճաշարանների, թեյարանների վերահսկողությունը փայատերերի ակտիվի կողմից՝ հանձինս խանութային հանձնաժողովների:

Աշխատավորների դեպուտատների բոլոր նորընտիր տեղական Խորհուրդներին կից կազմված են առևտրի մշտական հանձնաժողովներ: Նրանք կարող են և պետք է մեծ դեր խաղան խորհրդային առևտրի վերելքի գործում, սիստեմատիկ կերպով վերահսկելով ձեռնարկությունները, վճռա-

կանոնեն պայքարելով զանազան տեսակի խեղաթյուրումների և չարաշահումների դեմ, ոգնելով ընդարձակելու ապրանքների ասորտիմենտը խանութներում ի հաշիվ տեղական ռեսուրսների լավագույն ոգտագործման:

«...Խորհրդային առևտուրը,— սովորեցնում է մեզ ընկեր Ստալինը,—մեր հարազատ, բոլշևիկյան գործն է»*): Հարկավոր է վերջ տալ այն աղայական-արհամարհական վերաբերմունքին դեպի առևտուրը, վոր կա դեռևս մի քանի մարդկանց մոտ, այդ թվում նույնիսկ կոմունիստների մոտ, վորոնք առևտուրը դիտում են վորպես յերկրորդական, անարժան գործ:

Առևտրական ծառայողներն աշխատում են ժողովրդական տնտեսության շատ կարևոր մի ճակատամասում, սպասարկում են աշխատավորների ամենորյա կարիքներին, «...առևտրի աշխատողները, այդ թվում վաճառասեղանի աշխատողները, յեթե միայն նրանք ազնվաբար են աշխատում,— հանդիսանում են մեր, հեղափոխական, բոլշևիկյան գործի կիրառողները»*):

---

*) Ի. Ստալին.— «Լենինիզմի հարցերը» եջ 462, 11-րդ հրատ.:



Ահա թե ինչո՛ւ առևտրաշրջանառության վերելքի համար, ապրանքների առատության համար, աշխատավորների կուլտուրական սպասարկման համար պայքարելը հանդիսանում է առևտրի բոլոր աշխատողների, բոլոր կուսակցական և խորհրդային կազմակերպությունների կարևորագույն պարտականությունը:

# ԱԳԻՏԱՑԻԱՆ ՓԱՍՏԵՐՈՎ

ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի վեցերորդ սեսիայում խորհրդային ժողովրդի ընտրյալները, հանդես գալով սոցիալիզմի յերկրի 1940 թվի բյուջեի և 1938 թվի պետական բյուջեի կատարման մասին ընկ. Զվերևի տված զեկուցման առթիվ բացված մտքերի փոխանակությանը, պատմեցին սոցիալիզմի անհամար հաղթանակները մեր անծայրածիր հայրենիքի բոլոր անկյուններում:

Ագիտատորներին օգնելու համար տպագրում ենք այն թվերի և փաստերի մի մասը, վորոնց մասին խոսեցին ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի դեպուտատները Կրեմլի ամբիոնից:

★ 1940 թվին ԽՍՀՄ-ում կազմակերպվում են 405 նոր ՄՏԿ-ներ:

★ Այս տարի ՄՏԿ-ները կստանան 28 հազար նոր տրակտորներ և 15 հազար կոմբայններ:



★ Անցյալ տարի ընդամենը մոտ 200 հազար դիմում եր տրված Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին մասնակցելու ցանկության մասին: Այս տարի կա այդպիսի 468 հազար դիմում: Կոլխոզները 1939 թվին տվել եյին 16 հազար դիմում, իսկ 1940 թվին՝ 33 հազար դիմում:

★ Կոլխոզների ընթացիկ հաշվում Պետբանկում և Գյուղբանկում առ 1-ը հունվարի 1939 թվի կային 3·201 միլլիոն ռուբլու դրամական միջոցներ, իսկ առ 1-ը հունվարի 1940 թվի՝ 3642 միլլիոն ռուբլի:

★ 1939 թվին Վրաստանում կային 37 այնպիսի կոլխոզներ, վորոնցից յուրաքանչյուրը ստացել ե ավելի քան մեկ միլլիոն ռուբլու դրամական յեկամուտ:

★ Թաթարական ԱԽՍՀ-ում առ 1-ը հունվարի 1937 թվի ավանդների մնացորդները խնայողական դրամարկղներում կազմում եյին 25 միլլիոն ռուբլի: Առ 1-ը հունվարի 1940 թվի նրանք հասնում եյին 48 միլոն ռուբլու:

★ Յեթե Մոսկվայում բանվորական ըն-

տանիքի մեկ անդամի ամսական յեկամուտները 1937 թվին ընդունենք իբրև 100%, ապա 1938 թվին նրանք կազմում եյին 112,6%, իսկ 1939 թվին՝ 145,7%:

★ Բազմազավակ մայրերին պետական նպաստ ե տրվում միայն ԽՍՀՄ-ում: 1940 թվի բյուջեյով տրվելու յե 1162 միլիոն ռուբլու այդպիսի նպաստ:

## ՅԵՐԿԻՐԸ ՍՈՎՈՐՈՒՄ Ե

★ Անգլիայում, Ֆրանսիայում, Իտալիայում և Ճապոնիայում, միասին վերցրած, 1938—1939 թվին դպրոցներում սովորողների թիվը 32 միլիոնից ավելի չեր: ԽՍՀՄ-ի դպրոցներում 1940 թվին սովորելու յեն 36·765 հազար հոգի:

★ Իտալիայում ազգաբնակչության յուրաքանչյուր հազար մարդուն ընկնում ե միջնակարգ և տարրական դպրոցների 120,1 սովորող, Ֆրանսիայում՝ 135,6, Անգլիայում՝ 144,9, Ճապոնիայում՝ 168, իսկ ԽՍՀՄ-ում՝ 184 սովորող:

★ ԽՍՀՄ-ի դպրոցներում սովորողների թիվը 1940 թվին 2,5 միլիոնով գերազանցում ե սովորողների անցյալ տարվա թվից:

★ 1940 թվին ծրագրված ե բաց անել 2083 նոր դպրոցներ Խորհրդային յերկրի քաղաքներում և գյուղական վայրերում:



★ Վերջին 5 տարում Մոսկվայում կառուցված ե 379 նոր դպրոց 336 հազար տեղով: Մոսկվայի դպրոցականների 70%-ից ավելին սովորում ե նորակառույց դպրոցներում:

★ Ցարական կառավարությունը 1913 թվին Բուրյաթ-մոնղոլների «լուսավորության» վրա ծախսել ե ազգաբնակչության յուրաքանչյուր շնչին 70 կոպեկ: Խորհրդային իշխանությունն ազգաբնակչության յուրաքանչյուր շնչի վրա ծախսում ե 80 ռուբլի:

★ 1928—1929 թվին Ադրբեջանական ԽՍՀ-ում լուսավորության հատկացումները կազմել են 20,8 միլիոն ռուբլի: 1940 թվին ծրագրված ե ծախսել 480,9 միլիոն ռուբլի, այսինքն ավելի քան 20 անգամ:

★ 1939 թվին Թուրքմենիայում ուսուցիչների թիվը 26 անգամ ավելի յեր, քան մինչև հեղափոխությունը:

★ ՌԽՖՍՀ վոչ-լրիվ միջնակարգ և միջնակարգ դպրոցներում սովորողների հենց միայն տարեկան աճը 1940 թվին կկազմի մոտ 2 միլիոն: Այս թիվը համարյա 2,5 անգամ ավելի յե ցարական Ռուսաստանի միջնակարգ դպրոցների սովորողների ընդհանուր թվից:

★ Մոսկվայի բարձր— ութերորդ, իններորդ և տասներորդ դասարաններում սովորողների թիվը 1932 թվից մինչև 1939 թիվը ավելացել է 17 անգամ:

★ Պարլամենտի նիստերից մեկում Անգլիայի աշխատանքի մինիստրի բերած տվյալների համաձայն, ամբողջ Անգլիայում աշխատում են 80 հազար բարձրագույն կրթություն ունեցող մասնագետներ: ԽՍՀ Միությունում բարձրագույն ուսումնական հիմնարկներն ամեն տարի տալիս են 110 հազար մասնագետներ:

★ ԽՍՀՄ-ի ԲՈՒՀ-երում սովորում են 600 հազար ուսանողներ, այսինքն՝ ավելի շատ, քան Անգլիայի, Ֆրանսիայի, Իտալիայի, Ճապոնիայի և Գերմանիայի բոլոր ԲՈՒՀ-երում միասին վերցրած: Այս տարի ԲՈՒՀ-երն են ընդունվելու 180,700 հոգի, իսկ տեխնիկումները՝ 384 հազար: ԲՈՒՀ-ում մասնագետ պատրաստելու վրա պետությունը ծախսում է 20-ից մինչև 30 հազար ռուբլի:

★ ԽՍՀՄ-ում յուրաքանչյուր հազար բնակչին ընկնում է 2—3 անգամ ավելի ուսանող, քան Անգլիայի և Ֆրանսիայի տիպի փոքր կապիտալիստական յերկրում,



չխոսելով արդեն Իտալիայի և Ճապոնիայի մասին:

★ Ղազախստանում նախքան հեղափոխությունը վոչ մի ԲՈՒՀ չկար: Այժմ կա 16 ԲՈՒՀ՝ 11989 ուսանողներով:

★ Նախքան հեղափոխությունը ԲՈՒՀ-եր չկային նաև Ուզբեկստանում: Այժմ հանրապետության մեջ կա 26 ԲՈՒՀ 22868 ուսանողներով:

★ Խորհրդային ԲՈՒՀ-երում 2,5 անգամ ավելի կանայք են սովորում, քան Յեվրոպայի բոլոր կապիտալիստական յերկրներում:

★ Մեկ միլիոն հարյուր հազար Մոսկվացիներ սովորում են դպրոցներում, բանֆակներում, տեխնիկումներում և ԲՈՒՀ-երում: Հարյուր հազարավոր Մոսկվացիներ սովորում են զանազան կուրսերում: Ուսուցման բոլոր ձևերով ընդգրկված է Մոսկվայի մեծահասակ բնակչության 40%-ից ավելին:

★ ԱՄՆ-ում 20·331 բնակչին ընկնում է մեկ գրադարան, Իտալիայում՝ 20·211 բնակչին, Ճապոնիայում՝ 14·774 բնակչին, Անգլիայում՝ 4300 բնակչին, Գերմանիայում՝ 4297 բնակչին, իսկ ԽՍՀՄ-ում՝ 2197 բնակչին մեկ գրադարան:

★ Յուրաքանչյուր 100 բնակչին գրադարաններում և շրջանառության մեջ յեղած գիրք է ընկնում— Իտալիայում՝ 4,8, Գերմանիայում՝ 15,8, Ճապոնիայում, 17,4, ԱՄՆ-ում՝ 79, իսկ ԽՍՀՄ-ում՝ 86 գիրք:

★ Մոսկվայի մասսայական գրադարանների թիվը 1939 թվին ավելացել է 1913 թվի համեմատությամբ 48 անգամ, իսկ գրքերի թիվը՝ 121 անգամ:

## ՀՈԳԱՑՈՂՈՒԹՅՈՒՆԸ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԱՐԴԿԱՆՑ ԱՌՈՂՋՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

★ Մահճակալների թիվը ԽՍՀՄ-ի հիվանդանոցներում 1940 թվին ավելանում է 21.400 հատով, ծննդատներում՝ 5.200 հատով և մանկամսուրներում՝ 85.100 հատով:

★ ԽՍՀՄ-ի գյուղական վայրերում բացված են ավելի քան 12,5 հազար բժշկական տեղամասեր և 35 հազար ֆելդշերական ու մանկաբարձական կայաններ: Քաղաքներում մահճակալների ցանցը 1919 թվի համեմատությամբ ավելացել է 5,5 անգամ: Ծննդատների մահճակալների թիվը ավելացել է 34 անգամ:

★ 1940 թվին մշտական մանկամսուրներում լինելու յեն 900 հազար յերեխա և սեզոնային մանկամսուրներում՝ 4 միլիոն յերեխա:



★ 1913 թվին ցարական Ռուսաստանի
ամբողջ մանկամսուրային ֆոնդը կազմում
էր 500 մահճակալ: Հենց միայն Խորհրդա-
յին Որեխովո-Զույեվոյում մանկամսուրնե-
րի մահճակալները յեռապատիկ ավելի յեն,
քան ամբողջ ցարական Ռուսաստանում:

★ Նախահեղափոխական Ռուսաստանում
կային 19.800 բժիշկներ, այժմ՝ 117 հա-
զար:

★ Նախքան հեղափոխությունը ամբողջ
Ուզբեկստանում կար 1.700 հիվանդանոցա-
յին մահճակալ, գլխավորապես քաղաքնե-
րում: Այժմ Ուզբեկական ԽՍՀ-ում կա 16
հազար 452 մահճակալ:

★ Ներկայի Տաջիկական ԽՍՀ-ի տերիտո-
րիայում 1913 թվին կար 13 բժիշկ: Այժմ
այստեղ կան ավելի քան 550 բժիշկներ:

★ Ամբողջ Ղազախստանում 1913 թվին
կար 33 բժիշկ: Այժմ Ղազախական ԽՍՀ-
ում կա 1700 բժիշկ:

★ Թուրքմենիայում նախքան հեղափո-
խությունը առողջապահական կայաններ
համարյա թե չկային: Այժմ այստեղ կան
273 բժշկական-ամբուլատորական հիմնարկ-
ներ, 644 բժշկական-ֆելդշերական կայան-
ներ և 84 կանանց ու մանկական կոնսուլ
տացիաներ: Ընդամենը հանրապետության

մեջ կան 4 հազար բժիշկներ և միջին բուժպերսոնալ:

★ 1928—1929 թվին Ադրբեջանում առողջապահական գործին հատկացված է յեղել 7,8 միլիոն ռուբլի: 1940 թվի բյուջեյով Ադրբեջանն առողջապահության վրա ծախսում է 204,9 միլիոն ռուբլի:

★ Մահացությունը ԽՍՀՄ-ում 1913 թվի համեմատությամբ պակասել է ավելի քան յերկու անգամ:

★ 13 տարում ԽՍՀՄ-ի ազգաբնակչության բնական աճը կազմել է 16%: Այդ նույն ժամանակամիջոցում կապիտալիստական յերկրներում ազգաբնակչության բնական աճը յեղել է 8%, իսկ մի քանի կապիտալիստական պետություններում մահացությունը գերազանցում է ծնունդից:

## ՆՈՐ ԿՅԱՆՔՆ ԱԶԱՏԱԳՐՎԱԾ ՅԵՐԿՐՈՒՄ

★ 1940 թվին Ուկրաինայի և Բելոռուսիայի արևմտյան մարզերի տնտեսական ու կուլտուրական շինարարության համար միութենական, հանրապետական և տեղական բյուջեներով բաց է թողնվում ավելի քան 3 միլիարդ ռուբլի:

★ 1940 թվի գարնանն Ուկրաինայի արևմտյան մարզում կազմակերպված է 100 ՄՏԿ: 1940 թվին կազմակերպվելու յե



ընդամենը 174 ՄՏԿ— 1650 տրակտորներով:

★ Բելոռուսիայի արևմտյան մարզում ստեղծվում է 101 ՄՏԿ:

★ Բելոռուսիայի արևմտյան մարզերի ավելի քան 25 հազար կովազուրկ և 10 հազար ձիազուրկ գյուղացիական տնտեսություններ կովեր և ձիեր ստացան:

★ ՈՒԽՍՀ-ի պաներից ազատագրված Տարնոպոլի մարզում գյուղացիների վրա բաժանված է 315 հազար հեկտար հող: 102·140 գյուղացիական տնտեսություններ հող են ստացել: Գյուղացիների վրա բաժանված է՝ 11·229 ձի, 11·062 կով, 1222 յեզ, 3223 խոզ, 3367 վոչխար:

★ Նույն Տարնոպոլի մարզում նախքան Կարմիր Բանակի գալը կար ուկրաինական 52 մասնավոր դպրոց: Այժմ այստեղ ստեղծված է 980 ուկրաինական, 185 լեհական, 20 հրեական, 2 ռուսական, 1 գերմանական դպրոց: Մարզում սովորում են 197 հազար 977 աշակերտ:

★ 1940 թվին Ուկրաինայի արևմտյան մարզերում բացվելու յեն՝ 410 գրադարան, 3400 ակումբ, այդ թվում 3200 գյուղական ակումբ:

★ Արևմտյան Ուկրաինայի մարզերում

ընդհանուր ուսուցման ցանցում ընդգրկվելու յեն 1·285 հազար յերեխա: Սովորելու յեն նաև 350 հազար անգրագետ և կիսագրագետ մեծահասակներ:

★ ՈՒԽՍՀ-ի Տարնոպոլի մարզում նախքան Կարմիր Բանակի գալը աշխատում եյին լոկ թափառաշրջիկ թատերախմբեր, թատրոններ անիվների վրա: Նույնիսկ այնպիսի խոշոր մի կենտրոն, ինչպես Տարնոպոլը, թատրոն չուներ: Այժմ այստեղ ստեղծված է 3 պետական թատրոն— 2 ուկրաինական և 1 հրեական: Կազմակերպված է 3 յերաժշտական դպրոց, ուր սովորում են բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի 1100 յերեխաներ:

★ Տարնոպոլի մարզում ստեղծված են 22 նոր պոլիկլինիկաներ, 1940 թվին կառուցվելու յեն ելի 34 նոր պոլիկլինիկաներ:

★ Նախկին Արևմտյան Բելոռուսիայում առ 1-ը սեպտեմբերի 1939 թվի կային 66 հիվանդանոցներ և ծննդատներ: Առ 1-ը հունվարի 1940 թվի դարձան 177: Այս տարի հիվանդանոցների և ծննդատների թիվը հասնելու յե 262-ի:



# ՀԱՐԱՎ-ԱՖՐԻԿՅԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ

## ՏԵՐԻՏՈՐԻԱՆ, ԱԶԳԱԲՆԱԿՉՈՒԹՅՈՒՆԸ, ՔԱՂԱՔՆԵՐԸ

Հարավ-Աֆրիկյան Միությունը— Բրիտանական կայսրության այդ դոմինիոնը (ինքնավար գաղութը)— գրավում է Աֆրիկայի ամբողջ հարավային վերջավորությունը և բաղկացած է չորս նահանգներից— Կեյպլենդ, Նատալ, Տրանսվալ և Օրանժի ազատ պետություն:

Հարավ-Աֆրիկյան Միության աշխարհագրական սահմանների մեջ են գտնվում յերկու բրիտանական պրոտեկտորատներ— Բասուտո լենդ և Սվազիլենդ: Առաջին իմպերիալիստական պատերազմից հետո Հարավ-Աֆրիկյան Միությանը հանձնվեց վորպես մանդատային տերիտորիա նախկին գերմանական գաղութ Հարավ-Արևմտյան

Աֆրիկան, վորը համարվում է նրա բաղկացուցիչ մասը: Նրա տերիտորիան 808,600 քառակուսի կիլոմետր է, ազգաբնակչությունը՝ 359,144 մարդ (բնիկները— բանտու նեգրերն ու հոտենտոտները— և 31 հազար յեվրոպացիներ, վորոնց մեկ յերրորդից մինչև կեսը գերմանացիներ են): Մանդատային տերիտորիան ել պրոտեկտորատների նման կառավարվում է «ադմինիստրատորի» կողմից, վորը յենթակա յե Հարավ-Աֆրիկյան Միության ընդհանուր նահանգապետին:

Հարավ-Աֆրիկյան Միությունը յերեք կողմից շրջապատված է ծովով (Ատլանտյան և Հնդկական ովկիանոսներով), իսկ հյուսիսից սահմանակից է Հարավ-Արևմըտյան Աֆրիկային, Բեչուանալենդ ու Հարավային Ռոդեզիա բրիտանական գաղութներին և պորտուգալական Մոզամբիկ գաղութին:

Իր աշխարհագրական դիրքով Հարավ-Աֆրիկյան Միությունը վիթխարի ստրատեգիական նշանակություն ունի Յեվրոպայից դեպի Հնդկաստան ու Հեռավոր Արևելք տանող ծովային ճանապարհի համար, մանավանդ, այն դեպքում, յեթե



փակվի ճանապարհը Միջերկրական ծովով ու Սուեզի ջրանցքով:

Հարավ-Աֆրիկյան Միության տարածությունը 1223 հազար քառակուսի կիլոմետր է, ազգաբնակչությունը (1936 թիվ)՝ 9·588·665 մարդ, վորոնցից յեվրոպական ծագում ունեցողները՝ 2 միլիոն (21%), վոչ յեվրոպականը՝ 7,6 միլիոն (79%):

Անգլիացիները (783 հազար) փոքրամասնություն են կազմում վոչ միայն ամբողջ ազգաբնակչության մեջ, այլ անգամ սպիտակամորթ բնակիչների մեջ (սպիտակամորթների 39%-ը, իսկ ամբողջ ազգաբնակչության 8,7%-ը): Սպիտակամորթ ազգաբնակչության մեծամասնությունը (1121 հազար) բաղկացած է աֆրիկանդերներից (սպիտակամորթների 56%-ը, իսկ ամբողջ ազգաբնակչության 11,69%-ը): Սրանք սկզբնական հոլանդիական վերաբնակիչների՝ բուրերի հետնորդներն են:

Վոչ-յեվրոպական ծագում ունեցող ազգաբնակչությունը ճնշող մեծամասնությամբ բաղկացած է բնիկներից՝ բանտու նեգրերից, վորոնք հաշվվում են 6·597 հազար հոգի (68,8%): Ազգաբնակչության 2,29 տոկոսը (220 հազար հոգի) կազմում են ասիական ծագում ունեցող-

ները՝ չինացիները և մանավանդ հնդկացիները:

Քաղաքներում ապրում է ազգաբնակչության 31,46 տոկոսը, որի կեսը սպիտակներ են: Խոշորագույն քաղաքներն են՝ Պրետորիա (մայրաքաղաքը, 129 հազար բնակչությամբ), Իոհաննեսբուրգ (ոսկեհանման արդյունաբերության կենտրոն, 519 հազար բնակչությամբ), Կեյպտաուն (պառլամենտի աթոռանիստ քաղաքը, նավահանգիստ, 335 հազար բնակչությամբ), Դուրբան (նավահանգիստ, 260 հազար բնակչությամբ):

Անգլիացիների մեծ մասն ապրում է քաղաքներում. դա բուրժուազիան է, մանր բուրժուազիան, չինովնիկները, ծառայողները, ինչպես նաև որակյալ բանվորները: Բուրերի մեծ մասը կազմում են ֆերմերները: Բնիկների 82,58%-ը զբաղված է գյուղատնտեսության մեջ, մնացածները՝ գերազանցապես հանքահանման արդյունաբերության մեջ:

Երկրում տիրապետում է անգլիական ֆինանսական օլիգարխիան, որի ձեռքում են գտնվում հիմնական տնտեսական լծակները:



## Արդյունաբերությունը

Առաջին տեղում է գտնվում արդյունահանող արդյունաբերությունը, որը համարյա ամբողջապես կենտրոնացած է բրիտանական կապիտալիստների ձեռքում: Հիմնական ճյուղը ոսկու հանույթն է: Հանվում է տարեկան մոտ 350 կիլոգրամ ոսկի (համաշխարհային հանույթի մեկ յերրորդից մինչև կեսը): Ոսկեհանման արդյունաբերության հիմնական ռայոնն է Վիտվատերսրանդ (Տրանսվալ): Այստեղ զբաղված են մոտ 350 հազար բնիկ և 50 հազար սպիտակ բանվորներ:

Ադամանդների հանույթը, որը կազմում է համաշխարհային հանույթի յերկու յերրորդ մասը, ամբողջապես գտնվում է անգլիական ընկերությունների ձեռքում: Դրանից բացի, հանվում և մասամբ արտահանվում են ածուխ, յերկաթահանք, ասբեստ, նավթ, անագ, արծաթ, պլատին:

Մշակող արդյունաբերության մեջ առաջին տեղը գրավում է սննդի արդյունաբերությունը (ալրաղացներ, սառնարանդարաններ, ձիթագործարաններ, պահածոագործարաններ, շաքարի գործարաններ), յերկ-

րորդ տեղը՝ ծանր արդյունաբերությունը (մետալուրգիա և մեքենաշինություն), յերրորդ տեղը՝ շինարարական արդյունաբերությունը:

## Գյուղատնտեսությունը

Հողի ճնշող մեծամասնությունը (92,2 %) պատկանում է սպիտակամորթներին: Հանդիպում են 10 հազարանոց խոշոր կալվածքներ: Սպիտակամորթ կալվածատերերի հողը մշակում են բնիկները— հողազուրկ բատրակներն ու կիսավարձակալները, վորոնց աշխատանքի պայմանները կիսաստրկական բնույթ են կրում: Մշակվում է պիտանի հողի 5 %-ը միայն:

Բնիկներին թույլատրվում է հող ունենալ միայն «ռեզերվատներում», վորոնց հատկացված է ընդամենը 95,6 հազար քառակուսի կիլոմետր (7,8%) հող, և այն էլ վատթար հողը: Այստեղ ապրում է բոլոր բնիկների մոտ կես մասը: Նրանց շահագործում են և՛ ցեղապետերը, և՛ կապիտալիստական պետությունը, վորը նրանց հարկում է հատուկ հարկերով, և՛ յեվրոպացի ու հնդիկ վաճառականները, վորոնք մոնոպոլիզացիայի յեն յենթարկել առևտուրը ռեզերվատներում: Հողի պա-



կասն ու անորոք շահագործումը հանգում են բնիկների թշվառությանը, քաղցին, մահացմանը և եմիգրացիային:

Գյուղատնտեսության առաջատար ճյուղը անասնապահությունն է (վոչխարաբուծության գծով Հարավ-Աֆրիկյան Միությունը յերրորդ տեղն է գրավում աշխարհում, ունենալով 41 միլիոն վոչխար): Այնուհետև գալիս է յեգիպտացորենի մշակությունը (վերջին բերքը յեղել է մոտ 28 միլիոն ցենտներ):

## Արտաքին առևտուրը

Եքսպորտի կարեվորագույն հոդվածներն են՝ վոսկին (ամբողջ արտահանման կեսից ավելի), ադամանդները, բուրդը, յեգիպտացորենը: Ներմուծվում են գերազանցապես արդյունաբերական շինվածքներ (մեքենաներ, ավտոմոբիլներ, յերկաթուղային նյութեր): Արտաքին առևտրի շրջանառության կեսից ավելին ընկնում է Անգլիային: Հարավ-Աֆրիկյան Միության նավահանգիստներն այցելող նավերի մոտ 75 տոկոսը պատկանում է Անգլիային: Վերջին տարիներս հարաճուն դեր եր խաղում Գերմանիան (արտահանում եր բուրդ և հումքի այլ տեսակներ, ներմուծում եր

երկաթուղային սարքավորում և այլ ապրանքներ)։

## Պետական կարգերը

Ըստ 1909 թվի սահմանադրության՝ Հարավ-Աֆրիկյան Միությունը չորս նահանգների ֆեդերացիա յե, իսկ փաստորեն՝ ունիտար պետություն։ Նահանգական պարլամենտների և կառավարությունների իրավունքները սահմանափակված են զուտ տեղական հարցերով։

Գործադիր իշխանությունը պատկանում է ընդհանուր նահանգապետին (վորը համարվում է անգլիական թագավորի ներկայացուցիչը) և կառավարությանը, վորը պատասխանատու յե պարլամենտի առաջ։

Պարլամենտը բաղկացած է յերկու պալատից— սենատից (40 անդամ) և ժողովրդական ժողովից (153 դեպուտատ)։ Սենատի ընտրությունները յերկաստիճան են, ժողովրդական ժողովինը՝ ուղիղ, բայց փոփոխվում են ըստ պրովինցիաների, տեղական նահանգական պարլամենտների ընտրության վերաբերյալ ընտրական որենքին համապատասխան (կրթական և գույքային ցենզեր— Կեպլենդ, Նատալ)։ «Սևամորթները» միանգամայն զրկված են



պարլամենտում մուտք ունենալուց, միայն Կեպլենդում ունեն ընտրելու սահմանափակ իրավունք։

## Բանակը

Խաղաղ ժամանակ թվական կազմն է՝ 3874 շարքային և 157 սպա։ Բոլոր առողջ մարդիկ 17-ից մինչև 60 տարեկան զինապարտ են համարվում։ Ռեզերվը 111 հազար է։ Բանակն առայժմ լրացվում է կամավորներով։ Ըստ 1912 թվի որենքի Հարավ-Աֆրիկյան Միության բանակը չի կարող ոգտագործվել Հարավային Աֆրիկայի սահմաններից դուրս։ Անգլիան Հարավ-Աֆրիկյան Միության մեջ սեփական զորք չի պահում, բայց Սայմոնստաուն նավահանգիստը Բարեհուսո հրվանդանում հանդիսանում է նրա ռազմա-ծովային բազան։

## Պատմական անցյալը և բուրժուական կուսակցությունները

Հարավային Աֆրիկան (Բարեհուսո հրվանդանը) բացել են պորտուգալացիները 1486 թվին։ 1652 թվին այնտեղ հաստատվեց Նիդերլանդական Ոստ-Հնդկական ընկերությունը։ Հոլանդիական կոլոնիստներ-

րը— գյուղական տնտեսատերեր— սկսեցին բնիկներին դուրս մղել և ստրուկների վերածել:

Օգտվելով Հոլանդիայի թուլացումից նապոլեոնյան պատերազմների ժամանակ, Անգլիան գրավեց հոլանդիական տիրապետությունները Հարավային Աֆրիկայում (մոտավորապես ներկայի Կեպլենդ նահանգի սահմաններում), չնայած նրան, վոր Հոլանդիան, հանդես յեկավ Անգլիայի կողմում ընդդեմ Նապոլեոնի:

Բուրերը, վորոնք ճնշում եյին բնիկ ազգաբնակչությանը, իրենց հերթին ընկան ոտարերկրյա— անգլիական— ճնշման տակ (տնտեսական կեղեքում, լեզվի հալածանք և այլն): Ճնշման անտանելիությունը հանգեց այն բանին, վոր 1836–1840 թվականներին մի քանի տասնյակ հազար բուրեր իրենց կանանց ու յերեխաների հետ գաղթեցին հյուսիս և արևելք, անգլիացիների կողմից չգրավված մարզերը, և կազմեցին բուրական հանրապետություններ— Նատալ, Տրանսվալ, Որանժի ազատ պետություն:

Միաժամանակ անգլիացիներն ընդարձակեցին իրենց տիրապետությունները, հպատակեցնելով և բնաջնջելով տեղական



ազգաբնակչությանը: 1845 թվին նրանք գրավեցին նաև բուրական Նատալ հանրապետությունը:

60-ական թվականներին Որանժի ազատ պետության մեջ ադամանդաբեր ավազներ և 80-ական թվականներին Տրանսվալում վոսկի հայտնաբերվելուց հետո անգլիացիներն սկսեցին ակտիվորեն պայքարել Տրանսվալը և Որանժի ազատ պետությունը գրավելու համար: Այդ պայքարը հանգեց 1899–1902 թվականների անգլո-բուրական պատերազմին: Բուրերի համառ, հերոսական դիմադրությունը փշրվեց անգլիացիների գերազանց ուժերի կողմից (150 հազար ընդդեմ 55 հազար բուրերի):

Ըստ 1902 թվի հաշտության պայմանագրի, բուրական հանրապետությունները կորցրին անկախությունը, բայց Անգլիան խոստացավ նրանց ինքնավարություն տալ:

1909—1910 թվականներին ստեղծվեց Հարավ-Աֆրիկյան Միությունը չորս նահանգից բաղկացած, վորը դոմինիոնի իրավունքներ և սահմանադրություն ստացավ: Անգլիացիներին հաջողվեց գործակից դարձնել բուրական բուրժուազիայի վերնախավին, վորի շահերը կապված եյին անգլիական կապիտալի հետ: Այդ խավերը

կազմեցին «հարավ-աֆրիկյան կուսակցություն» բուրական գեներալներ Բոտայի և Սմուտսի գլխավորությամբ, վորոնք և գլխավորեցին բոլոր կաբինետները մինչև 1924 թվականը:

Բայց բուր ֆերմերները, ինչպես և բուրական ինտելիգենցիայի և բուրժուազիայի մի մասը թշնամաբար եյին վերաբերվում անգլիացիների հետ գործակցելուն: Այդ խավերի շահերը ներկայացնում եր «ազգային կուսակցությունը» մեկ ուրիշ բուր գեներալի՝ Հերցոգի գլխավորությամբ: Այս կուսակցությունը պահանջում եր Հարավ-Աֆրիկյան Միության կատարյալ ինքնավարություն Բրիտանական կայսրության ներսում: Սակայն վախը բնիկներից ոպոզիցիոն բուրժուա-ֆերմերական բուրական ելեմենտներին ևս ստիպում եր փնտռել անգլիացիների աջակցությունը և կաշկանդում եր նրանց պայքարն ազգային ազատագրության համար:

Առաջին իմպերիալիստական պատերազմից հետո անգլիացիներին հաջողվեց վորոշ զիջումների գնով մերձենալ Հարավ-Աֆրիկյան Միության ոպոզիցիոն բուրական-նացիոնալիստական ելեմենտների: 1924 թվին իշխանության գլուխն անցավ



«ազգային կուսակցությունը» Հերցոգի գլխավորությամբ, իսկ 1934 թվին Սմուտսի «հարավ-աֆրիկյան կուսակցության» հետ միասին կազմեց «միացյալ կուսակցություն»:

Այս կուսակցությունների միացման ժամանակ անջատվեցին նրանց եքստրեմիստական (ծայրահեղ) խմբերը, վորոնք կազմեցին նոր կուսակցություններ:

«Դոմինիոն-կուսակցություն», վորն անջատվել է «հարավ-աֆրիկյան կուսակցությունից», ներկայացնում է անգլիական ֆինանսական ոլիգարխիայի շահերը, ծայրահեղ իմպերիալիստական է: Լիդերն է Ստալլերդը:

«Ազգային կուսակցություն», վորն անջատվել է Հերցոգի «ազգային կուսակցությունից», ներկայացնում է անգլիական ֆինանսական ոլիգարխիայի բռնացման հանդեպ թշնամական վերաբերմունք ցույց տվող ֆերմերական շրջանների շահերը: Կողմնակից է հանրապետության և Հարավ-Աֆրիկյան Միությունը Բրիտանական կայսրության կազմից անջատելուն: Միևնույն ժամանակ բնիկների հանդեպ ծայրահեղ ցեղային անհանդուրժողականու-

թյան գիրք է գրավում: Լիգերն է Մալանը:

## Բանվորների կազմակերպությունները ու շարժումը

Արդյունաբերության մեջ և տրանսպորտում զբաղված են ընդամենը (ըստ 1931 թվի տվյալների) 200 հազար սպիտակամորթ և 500 հազար «գունավոր» բանվորներ. գյուղատնտեսության մեջ 400 հազար սպիտակամորթ և 1 միլիոն բնիկ բանվորներ:

Լեյբորիստական կուսակցությունն ընդունում է միայն սպիտակամորթ բանվորներին և ներկայացնում է սպիտակամորթ պրոլետարիատի վերնախավը: Նա գիտակցաբար ցեղային անտագոնիզմ է հրահրում պրոլետարիատի մեջ, տանում է բրիտանական իմպերիալիզմին աջակցելու քաղաքականություն: Լիգերն է Մեդլին:

Կուսակցությունը ղեկավարում է սպիտակամորթ բանվորների առավել խոշոր պրոֆմիավորումը— Հարավ-Աֆրիկյան պրոֆեսիոնալ խորհրդին, որն ունի 52 հազար անդամ և չի ընդունում «գունավոր» բանվորներին:



Հարավ-Աֆրիկյան Միության կոմունիստական կուսակցությունը միակ կուսակցությունն է, որ հետևողականորեն պայքարում է ռասսայական անտագոնիզմը հաղթահարելու համար: Ստեղծում է խառը պրոֆմիություններ, համատեղ գործադուլային պայքարի կոչ է անում: Պարլամենտում դեպուտատներ չունի:

## Բնիկների դրությունը

Բնիկները ոչ միայն զրկված են քաղաքական իրավահավասարությունից, այլև նրանց քաղաքացիական իրավունքներն էլ են սահմանափակված: Նրանց համար նստակեցության գծեր են սահմանված ինչպես գյուղատնտեսության մեջ (ռեզերվատներ), այնպես էլ քաղաքներում (բնիկների արվարձաններ), որոնցից դուրս նրանք իրավունք չունեն ապրել և յերեվալ առանց հատուկ թույլտվության: Մտցված է հատուկ անձնագրային սիստեմ, որը սահմանափակում է նրանց տեղափոխության ազատությունը: Բնիկները զրկված են որակյալ աշխատանք կատարելու իրավունքից (1926 թվի օրենքը «գունավոր բուրյերի» մասին), նրանց աշխատավարձը 8-10 անգամ ցածր է սպիտակամորթի աշ-

խառնվածքից։ Նեգր հանքագործներն ապրում են հատուկ գոտիներում («կոմպաունդներում»), ամենախիստ վերահսկողության տակ։ Գյուղատնտեսության մեջ նեգրերը դարձված են սպիտակամորթ ֆերմերների կիսաճորտեր։ «Գունավորների» համար պահպանված են մարմնական պատիժները։ Բնիկները հարկվում են հատուկ բարձր հարկերով, որը չվճարելու դեպքում նրանց դատապարտում են հարկադիր աշխատանքի։ Սահմանափակված է նրանց կրթության իրավունքը։

Այսպես, ռասսայական ատելություն հրահրելով նեգրերի և բուրերի միջև, անգլիացիները փորձում են պահել իրենց տիրապետությունը Հարավ-Աֆրիկյան Միության մեջ։

Լիակատար իրավազրկությունը և հրեշային շահագործումը հանգում են նեգրերի այլասերմանն ու մահացմանը։ Քաղաքների նեգրաբնակ արվարձաններում մանուկների մահացությունը հասնում է հազարին 700–900-ի։

Պայքար պատերազմի և խաղաղության շուրջը

Անգլիայի կողմից Գերմանիային հայտարարված պատերազմը ծայր աստիճանի



լարված իրադրություն ստեղծեց երկրում։

Հերցոգի կողմնակիցները չեզոքության պահպանելու կողմն էին։ Բայց ուժ գործադրելու մասին Անգլիայի կողմից արված ուղղակի սպառնալիքի ներքո պարլամենտը ձայների աննշան մեծամասնությամբ (80 ձայնով ընդեմ 67-ի) քվեարկեց Գերմանիային պատերազմ հայտարարելու օգտին։

Դա կառավարական ճգնաժամ և «միացյալ կուսակցության» պառակտում առաջացրեց։ Հերցոգը, որ 1924 թվից գլխավորում էր կառավարությունը, հրաժարական տվեց, իր կողմնակիցների հետ միասին դուրս ելավ «միացյալ կուսակցությունից» և Մալանի «ազգային կուսակցության» հետ միասին հիմնեց նոր «վերամիացյալ ազգային կամ ժողովրդական կուսակցություն», որն իրեն մոտակա նպատակ է առաջադրում Հարավ-Աֆրիկյան Միությունը դուրս բերել պատերազմից, իսկ վերջնական նպատակը՝ Հարավ-Աֆրիկյան Միությունն անջատել Բրիտանական կայսրությունից և հանրապետություն հռչակել։ Պարլամենտում կուսակցությունն ունի 67 տեղ 153 տեղից։

«Ժողովրդական կուսակցության» հակապատերազմական դիրքն արտացոլում է Հարավ-Աֆրիկյան Միության ազգաբնակչության լայն խավերի— պատերազմից տառապող բանվորների, բուր ֆերմերների, բնիկների տրամադրությունները: Պատերազմի հետեվանքով դադարել է բրդի արտահանումը Գերմանիա, դժվարացել է յեգիպտացորենի արտահանումը: Դժվարություններ են ծագել արդյունաբերական սարքավորում ներմուծելու գործում: Կաղ է գալիս արդյունաբերությունը, աճում է գործազրկությունը, բարձրանում են գները:

Ջնայած արգելքին, մասսայական միտինգներ և ցույցեր են տեղի ունենում հակաբրիտանական լոզունգներով և խաղաղության պահանջով: Կոմկուսակցությունն աշխատավորներին բացատրում է պատերազմի իմպերիալիստական բնույթը և սպիտակամորթ ու «գունավոր» բանվորներին կոչ է անում միասնաբար պայքարել խաղաղության համար:

Սմուտսի կազմած նոր կառավարության մեջ մտել են «միացյալ կուսակցության» մնացորդները, «դոմինիոն-կուսակցության» ներկայացուցիչները և լեյբորիստները:



Սմուտսն անողոք պայքար է մղում հակապատերազմական շարժման դեմ, պետական ապարատից դուրս է մղում բուրական էլեմենտներին: Միևնույն ժամանակ, հաշվի առնելով յերկրում տիրող տրամադրությունը, Սմուտսը մինչև այժմ իսկ չի արել վոչ միայն զորահավաք հայտարարել, այլ նույնիսկ արգելել է Յեվրոպայում մղվող պատերազմի համար կամավորներ հավաքագրելը:

Պատ. խմբագիր՝ Դ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Պատ. քարտուղար՝ Հ. ՍԱՐԳՍՅԱՆ



Սրբագրիչ՝ ՀԱՐ. ՓԱՐԻԿՅԱՆ

Գլավլիտի լիազոր Ձ—1128

Պատվեր № 466, տիրաժ 8.555.

Հանձնված է արտադրության 29/V 1940 թ.

Ստորագրված է տպագրության 7/VI 1940 թ.

---

Հայկական ԽՍՀ Ժողկոմխորհին կից թերթերի և ամսագրերի տպարան, Երևան